ՅԱՌԱՋ
ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE
HARATCH
Fondé en 1925 Tél. : PRO. 86 - 60
Le Directeur : SCH. MISSAKIAN
Rédaction et Administration : 32, Rue de Trévise, Paris-9e
C.C.P. Paris 1678-63 R.C.Seine 376.286

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
Ֆրանսա եւ գաղութներ տարեկան 3000 ֆր., վեցամս. 1600
Արտասահման տարեկ. 3500 ֆր. կամ $ 10 հատը 12 ֆր.

ՀԻՆԳՇԱԲԹԻ 12 ՄԱՅԻՍ • JEUDI 12 MAI 1955

31ՐԴ ՏԱՐԻ — ԹԻՒ 7671 31e ANNEE — Խմբագիր ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ — ՆՈՐ ՇՐՋԱՆ, 11ՐԴ ՏԱՐԻ, ԹԻՒ 3082

# ՖՐԱՆՍԱՆ ԼԱՒԱՏԵՍ

*

Այս վերջին օրերու քաղաքական նորութիւնները՝ Երեքներու ժողովը, Գերմանիոյ մուտքը Ատլանտեան Ուխտին մէջ, չորս վարչապետներու հանդիպումի մը ծրագիրը, Աւստրիոյ դաշնագիրը, պատճառ եղած են որ որոշ լաւատեսութիւն տիրէ միջազգային շրջանակներու մէջ :

Եթէ կային մտահոգութիւններ աշխարհի խաղաղութեան մասին, աւելի հեռու են անոնք այսօր :

Տեղական թերթի մը տուած տեսակցութեան առթիւ վարչապետ Էտկար Ֆոռ կը հիմնաւորէ իր ապագայի յոյսերը կարգ մը յատկանշական տուեալներով :

Առաջին առթիւ վարչապետը կը նկատէ որ Չորսերու ժողովի մը պատրաստութիւնը եւ Աւստրիոյ դաշնագրին անմիջական ստորագրութեան պարագան, լաւագոյն նիշեր են խաղաղ Եւրոպայի մը համար :

Ասիոյ մասին, նախագահ Այզընհաուըրի եւ Տըլըսի յայտարարութիւնները նաեւ յուսալ կուտան մօտակայ լուծում մը Ֆորմոզայի համար, եւ եթէ Արեւմուտքի եւ Արեւելքի տեսակէտները միշտ իրարու դէմ են, պէտք է պարզապէս չմոռնալ որ ամէն ինչ կը կարգադրուի փոխադարձ զիջումներով :

Պ. Էտկար Ֆոռ կը հաւատայ որ ՄԱԿը մեծ դեր խաղցած է աշխարհի խաղաղութեան պահպանութեան մէջ եւ համոզուած է որ հիւլէական ուժը պէտք է գործածուի միայն խաղաղ նպատակներու համար :

Այս տեսակէտը կը գործադրէ արդէն Ֆրանսան :

Վարչապետը լաւատես է նաեւ ֆրանքեւգերման յարաբերութեանց նկատմամբ : Տնտեսական գործակցութիւն մը, որուն մէջ պէտք չէ այլեւս փոխադարձ անվստահութիւն գոյութիւն ունենայ, լաւագոյն առիթն է վերջ տալու համար երկու երկիրներու ընդդիմութեան :

Վարչապետը, վերջապէս կը ջանայ միշտ բարձրացնել Ֆրանսացիին կեանքի մակարդակը, եւ ատոր մէջ կը գտնէ լաւագոյն զէնքը պայքարելու համար համայնավարութեան դէմ :

Թոշակներու վերջին փոփոխութիւնները, տուրքերու բարեփոխումները մեծապէս նպաստեցին արդէն այս քաղաքականութեան :

Տնտեսապէս ուժով Ֆրանսա մը միայն կրնայ իր արժանավայել տեղը գրաւել բարեկամ երկիրներու կողքին եւ կատարել իր դերը աշխարհի մէջ :

Այս յուսադրիչ պարագաներու կողքին, կան անշուշտ կարգ մը ուրիշ խնդիրներ որ կրնան մթնոլորտը պղտորել :

Գերմանիոյ միասնականութիւնը, Ֆորմոզայի հարցը եւ կարմիր Չինաստանի ճանաչումը խնդիրներ են որ կը կարօտին լուրջ ուսումնասիրութեան : Եթէ այս հարցերուն նկատմամբ կարելի չէ վերապահ չըլլալ, վարչապետը կը կարծէ թէ որչափ ատեն որ գոյութիւն չունի «աշխարհի վարչական խորհուրդ» մը, անոր տեղ խաղաղաէր կամք մը կրնայ պահպանել աշխարհի խաղաղութիւնը :

Այզընհաուըր համաձայն է չորս վարչապետներու ժողովին : Հակառակ որ ինք թերահաւատ է անոր արդիւնքին մասին :

Արդ, ի՞նչի մասին պիտի խօսին : Այն հարցերուն մասին զոր Ֆրանսայի վարչապետը կը չօշափէ իբրեւ մթնոլորտը պղտորող խնդիրներ՝ Գերմանիոյ միասնականութիւն, Ֆորմոզա, կարմիր Չինաստանի ճանաչում, զինաթափում : Կարեւորը Խորհրդային Միութեան դնելիք պայմաններն են մանաւանդ Փարիզի համաձայնութեանց մասին :

# ՕՐՈՒԱՆ ԴԷՊՔԵՐԸ

## ՀՐԱՒԷՐԸ ՓՈԽԱՆՑՈՒԵՑԱՒ ՄՈՍԿՈՒԱՅԻ

*

**Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑ ԶԻՆԱԹԱՓՈՒԹԵԱՆ ՆՈՐ ԾՐԱԳԻՐ ՄԸ**

Միացեալ Նահանգներու նախագահը արտաքին նախարար Ֆ. Տըլըսի դրական պատասխան մը ղրկած ըլլալով, Ֆրանսա, Անգլիա եւ Ամերիկա, վարչապետներու ժողովի մը հրաւէրը պաշտօնապէս ներկայացուցին Խ. Միութեան : Այզընհաուըր, իր պատասխանին մէջ, ամէն իրաւասութիւն տուած էր արտաքին նախարարին, որպէսզի ինք որոշէ, եթէ այդպիսի հանդիպում մը «կարելի եւ արդիւնաւոր» կը նկատէ : Ուրեմն չորս վարչապետներուն ապագայ հանդիպումը արդէն գրեթէ կարգադրուած կը նկատուի, անշուշտ ենթադրելով թէ Խ. Միութիւնը պիտի ընդունի հրաւէրը : Ինչ որ, շատ հաւանական կը գտնեն իրազեկները : Ինչպէս կը սպասուէր, արտաքին նախարարներն ալ պիտի մասնակցին ժողովներուն : Եւ երբ վարչապետները ընդհանուր գիծերու մէջ համաձայնութեան մը գան, նախարարները պիտի շարունակեն բանակցութիւնները, քննելով խնդիրները մանրամասնութեամբ : Այսինքն՝ Էտ. Ֆոռ, Էնթընի Իտըն, Այզընհաուըր եւ Մար. Բուլկանին, նախապատրաստական համաձայնութիւն մը միայն պիտի փորձեն կնքել, մինչ բուն աշխատանքներն ու հաւանական դժուարութիւններու լուծումը, կը ձգուի արտաքին նախարարներուն : Այս տարազը, ինչպէս հաղորդած էինք առջի օր, Ֆ. Տըլըսի առաջարկած միջին ճամբան է, մօտեցնելու համար «Մեծերու» հանդիպումին մասին, Անգլիական եւ Ամերիկեան տեսակէտները : Եւ խորքին մէջ, յաջող տարազ մը կը թուի ըլլալ, որովհետեւ եթէ վարչապետներու ժողովը բանակցութեանց ընթացքին կրէ ձախողութեան մը պատասխանատուութիւնը, դժուար պիտի ըլլայ Արեւելք – Արեւմուտք նոր հանդիպում մը սարքել : Թուականի եւ վայրի մասին, միայն ենթադրութիւններ կան, որովհետեւ Երեք Մեծերու յուշագիրը ոչ մէկ առաջարկ կը ներկայացնէ այդ մասին : Ոմանք Լուկանօ (Զուիցերիա) հաւանական վայրը կը նկատեն, ուրիշներ Սթոքհոլմ : Կը կարծուի որ Աւստրիոյ դաշնագրին ստորագրութեան ժողովներուն, 15 Մայիսին Վիէննա, այս մասին որոշում պիտի առնուի Մոլոթովի հետ համաձայնաբար : Նոյն անորոշութիւնը՝ օրակարգին մասին : Սակայն կը նկատեն թէ Ամերիկան պիտի առաջարկէ քննել անպայման մանաւանդ երեք խնդիր :

— Զինաթափութիւն եւ հիւլէական ռումբի հարց :

— Գերմանիոյ Միութիւնը :

— Մարդկային եւ «գերուած ազգերու» ազատութիւն :

× Դիւանագիտական շրջանակներու կարծիքով, Մոսկուա հրաւէրին պատասխան պիտի չտայ Վարշաւիոյ ժողովին վերջանալէն առաջ :

× Երեք Մեծերը յուշագիրը ղրկեցին Մոսկուա, Ատլանտեան Ուխտի մնացեալ 12 անդամներու հաւանութիւնը առնելէն ետք :

×

Երբ Արեւմուտքի մեծերը կը ղրկէին հանդիպումին հրաւէրը Մոսկուա, Խ. Միութիւնը, մէջտեղ կը նետէր նոր ծրագիր մը, ընդհանուր զինաթափութեան մասին : Ինչպէս գիտէք, շաբաթներէ ի վեր զինաթափութեան յանձնաժողովը իր աշխատանքները կը տանի Լոնտոնի մէջ : Խ. Միութեան այս ծրագիրը, զոր Ժ. Մալիք ներկայացուց առջի օր յանձնաժողովին, լայն տեղ կուտայ արեւմտեան պետութեանց նախորդ ծրագրին կարգ մը տրամադրութիւններուն : Թէեւ ուշագրաւ է Մոսկուայի մերժումը արեւմտեան տեսակէտներուն, սակայն ակնբախ են նաեւ իր ճիգերը՝ Արեւմտ. Գերմանիոյ վերազինումը արգիլելու : Արդարեւ կ՚առաջարկէ .— Գերմանիոյ անմիջական պարպումը՝ չորսերու զինուորական ուժերէն, բացի անհրաժեշտ նկատուած մէկ քանի գունդերէ որոնք պիտի մնան հոն, մինչեւ վերջնական համաձայնութիւն մը : Արեւելեան եւ Արեւմտեան Գերմանիոյ ոստիկանական ուժերուն սահմանափակումը, եւ Չորսերու հսկողութիւնը՝ այդ մասին : Իսկ ինչ որ կը վերաբերի միջազգային զինաթափութեան՝

— Արգիլել հիւլ. զէնքերու գործածութիւնը, եւ շինութիւնը : Ստեղծել իւրաքանչիւր երկրի մէջ քննիչ յանձնաժողովներ, եւ ծրագիրը գործադրել տարուէ տարի, աստիճան առ աստիճան :

— Սահմանափակել զինուորական ուժերը որպէսզի չանցնին 1.500.000ը Ամերիկայի, Չինաստանի եւ Խ. Միութեան համար միասնաբար, եւ 650.000ը Ֆրանսայի եւ Անգլիոյ համար, նորէն միասնաբար :

×

ՖՐԱՆՔԵՒԽՈՐՀՐԴԱՅԻՆ բարեկամութեան դաշնագրին չեղեալ նկատուելուն առթիւ, մինչ Խ. Միութեան փոխ վարչապետը Քականովիչ կը յայտարարէ թէ « դրամատիրութեան տակ տառապող ժողովուրդները ուշ կամ կանուխ պիտի հետեւին մեր յեղափոխական ճամբուն», կուսակցութեան ընդհանուր քարտուղարը Խրուշչեւ կը յայտնէ Խ. Միութեան փափաքը՝ արեւմուտքի հետ գործակցելու :

# ՓԱՐԻԶԻ ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*

Մինչ Ատլանտեան Ուխտի ժողովները աւարտելու վրայ էին, կողմնակի հանդիպումներ, տեսակցութիւններ կը յաջորդէին իրարու : Հնդկաչինի խնդիր, Սարի մասին դժուարութիւններ :

Վարչապետը Էտ. Ֆոռ տեսակցութիւն մը ունեցաւ վարչապետ Ատընաուըրի հետ Սարի «Եւրոպացի մարզպանին» իրաւասութիւններուն մասին : Սարի վարչապետը Հոֆման, որ համամիտ չէ Ֆրանքեւգերմանական 30 ապրիլին առնուած որոշումին, հանդիպում մը ունեցաւ արտաքին նախարար Փինէի եւ վարչապետ Ատընաուըրի հետ : Կը կարծուի որ մարզպանին իրաւասութիւններուն նկատմամբ, Սարի վարչապետը պիտի ընդունի ի վերջոյ Ֆրանքեւգերմանական տարազը, որ կը նախատեսէ, ծանրակշիռ պարագաներուն, կառավարութեան որոշումներուն ժխտումը՝ մարզպանին կողմէ : Եթէ համաձայնութիւն մը չկնքուի, Արեւմտեան Եւրոպայի Միութիւնը իր այսօրուան ժողովին մէջ պիտի քննէ խնդիրը եւ հաւանական կը նկատուի որ վճիռ մը տայ :

× Գալով Հնդկաչինի հարցին, բարելաւում մը կը նկատուի Ֆրանսական եւ ամերիկեան տեսակէտներուն միջեւ գոյացած որոշ մերձեցում մը : Ֆրանսայի վարչապետն ու արտաքին նախարարը, նոր տեսակցութիւն մը ունեցան Ֆ. Տըլըսի հետ, սակայն տակաւին վճռական որոշում մը ձեռք չէ բերուած Հնդկաչինի մէջ Ֆրանքեւամերիկեան ներդաշնակ քաղաքականութեան մը մասին : Միւս կողմէ Սայկոնի կառավարութիւնը կարգ մը փոփոխութիւններու ենթարկուած է : Վարչապետ Տիէմ հրատարակեց նոր անդամներուն ցանկը : Թէեւ նախարարներու թիւը բարձրացած է, բայց կը նկատեն թէ քաղաքական տեսակէտէն չէ «ընդլայնուած» կառավարութիւնը : Նախարարները առաւելաբար փորձագէտներ են, եւ չեն ներկայացներ երկրին զանազան հոսանքները : Ինչ որ լուծում մը չի բերեր Հնդկաչինի ներկայ տագնապին :

# ՕԴԱՅԻՆ ՄԻՋԱԴԷՊ

★

Ամերիկեան ութը օդանաւեր, որ շրջան մը կը կատարէին Քորէայի ծովեզրին բացերը, դեղին ծովուն վրայ, յարձակման ենթարկուեցան «համայնավար 12 Միկերու կողմէ» ինչպէս կը հաղորդէ Ուաշինկթընէն զեկոյց մը : Ամերիկեան «Սէյպըր»ները կը դիմադարձեն եւ վար կ՚առնեն երկու Միկեր : Հաւանաբար երրորդ մըն ալ վար ինկած է, ծանրօրէն վնասուած ըլլալով : Փէքինի անթելը իր կարգին կը հաղորդէ լուրը յայտնելով թէ «Սէյպըր» մը վար առնուած է : Ոչ մէկ ակնարկութիւն փճացած «Միկ»երու մասին : Ուաշինթըն կը հերքէ Փէքինի լուրը .—«Ամերիկեան բոլոր օդանաւերն ալ վերադարձան օդակայան առանց վնաս կրած ըլլալու» :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՏԼԱՆՏԵԱՆ ՈՒԽՏԻ 16րդ համագումարը վերջացաւ երէկ : Քննութեան նիւթ դարձան բազմաթիւ խնդիրներ ինչպէս Ծայրագոյն եւ Միջին Արեւելքի հարցերը : Թուրքիոյ արտաքին նախարարը զեկոյց մը կարդաց Պանտունկի խորհրդաժողովին մասին : Յետոյ իւրաքանչիւր ներկայացուցիչ պարզեց իր կառավարութեան տեսակէտը : Ամերիկայի արտաքին նախարարը, բացատրեց ամերիկեան քաղաքականութեան հետապնդած նպատակները Ասիոյ մէջ : Տըլըսի կարծիքով, վառօդի տակառը Ասիան է այժմ, եւ կացութիւնը շատ աւելի վտանգաւոր է հոն, քան թէ Եւրոպայի մէջ :

× Քննուեցաւ նաեւ Ատլանտեան Ուխտի եւ Արեւմտեան Եւրոպայի Միութեան յարաբերութեանց խնդիրը : Երկու կողմակերպութիւնները զիրար կը լրացնեն, յայտարարուեցաւ պաշտօնապէս :

ԱՒՍՏՐԻՈՅ հաշտութեան դաշնագիրը, հակառակ դեռ տիրող դժուարութեանց, պիտի ստորագրուի այս կիրակի, կը յայտնեն իրազեկները : Ցամենայն դէպս այս կարծիքը հետզհետէ համոզում կը դառնայ : Կ՚ըսեն նոյնիսկ, թէ արտաքին նախարար Ֆիկլ պիտի ստորագրէ Աւստրիոյ կողմէ :

ՄՈՍԿՈՒԱՅԻ Չեխոսլովաքիոյ դեսպանատան մէջ սարքուած մէկ ընդունելութեան ընթացքին, Խ. Միութեան համայնավար կուսակցութեան ընդհանուր քարտուղարը Խրուշչեւ, ուշագրաւ յայտարարութիւններ ըրաւ խաղաղ համակեցութեան մասին : Խօսքը արեւմտեան երկիրներու դիւանագէտներուն ուղղելով, բաժակը վերցուց եւ՝ «Միջամուխ մի ըլլաք մեր խնդիրներուն, եւ մենք ալ չենք խառնուիր ձեր գործերուն» : Յետոյ ըսաւ թէ Խ. Միութիւնը չուզեր պատերազմ մը որովհետեւ արդէն «ներքին բաւական խնդիրներ ունի լուծելիք» :

ՎԱՐՇԱՒԻՈՅ ժողովը բացուեցաւ երէկ : Մար. Բուլկանին յայտնեց այս առթիւ թէ կը փափաքի որ նոր միջոցներ ձեռք առնուին ամրապնդելու համար արեւելեան պետութեան պաշտպանողական կարելիութիւնները :

ՈՒՈՇԻՆԿԹԸՆԷՆ կը հաղորդեն թէ դիւանագիտական շրջանակները աւելի նըպաստաւոր կը գտնեն «Բուլկանին անձանօթին» հետ հանդիպում մը, քան թէ «ամէն ատենուան Մոլոթով»ին հետ :

ԱՐՄԱՏԱԿԱՆ կուսակցութեան մէջ վերջին յեղաշրջումներուն առթիւ դեռ չեն հանդարտած կուսակցականներուն մտքերը : Ներքին տագնապ մըն է որ կ՚անցընեն այժմ արմատականները :

ՉԻՆԱՍՏԱՆԻ վարչապետը Շու Ան Լէյ տեսակցութիւն մը ունեցաւ Փէքինի անգլիական գործավարին հետ :

ՅԱՂԹԱՆԱԿԻ տօնին առթիւ, Խ. Միութեան պաշտպանութեան նախարարը յօդուած մը ստորագրած է «Փրաւտա»յի մէջ ուր կը գովէ Մար. Թիթօն :

